Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

Հ Կ (Բ) Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

№ 20 (98)

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ»
ԵՐԵՎԱՆ 1940

Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

Հ Կ (Բ) Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 20 (98)

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ»
ԵՐԵՎԱՆ—1940

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ


էջ

1. ԸՆՏԱՆԻՔԸ ԵՎ ԴՊՐՈՑԸ . . . 3
2. ՀԱՆՈՒՆ ԿՈԼԽՈԶԱՅԻՆ ԳՅՈՒՂԻ ԿՈՒԼՏՈՒՐԱԿԱՆ ԲԱՐԳԱՎԱՃՄԱՆ 57


---

# ԸՆՏԱՆԻՔԸ ԵՎ ԴՊՐՈՑԸ

*Քսան տարի առաջ, 1920 թվի հոկտեմբերի 2-ին, կոմերիտմիության համառուսաստանյան երրորդ համագումարում Վ. Ի. Լենինն արտասանած իր հոյակապ ճառում սեղմ, բայց հանճարեղ խորությամբ ու մեծ տրամաբանական ուժով ընդգծեց երիտասարդության կոմունիստական դաստիարակության պայծառ ուղիները, ցույց տվեց մեր դպրոցի էությունը, նրա զարգացման լայն ճանապարհը:*

*Հատկապես երիտասարդության առաջ, այն ժամանակ Վ. Ի. Լենինն իր ճառում ընդգծեց, դրված է կոմունիստական հասարակություն ստեղծելու խնդիրը:*

«Այս այդ տեսակետից մոտենալով երիտասարդության խնդիրներին, ես պետք է ասեմ, որ ընդհանրապես երիտասարդության և մասնավորապես կոմունիստական երիտասարդության միությունների և բոլոր այլ կազմակերպությունների խնդիրները կարելի է արտահայտել մի բառով՝ խնդիրն էությունն է՝ սովորել» (Լենին, Ընտիր երկեր, երկու հատորում, էջ՝ 837)։

Վ. Ի. Լենինը կոչ արավ կոմերիտմիությանն և ամբողջ սովետական երիտասարդությանը համառորեն տիրապետել գիտությունններին, օգտագործելու համար այն սոցիալիստական շինարարության աշխատանքում և շահագործողների դեմ մղած պայքարում։

Քննադատելով հին դպրոցը, որն եղել է խաշտությամբ վարժեցնելու և սերտելու դպրոց, որը սովորողների գլուխը լցրել է մեծ քանակությամբ անպետք հնոտիքով, մշակել է կապիտալիզմի ստրուկներ, Լենինը մատնանշել է, որ «հին ուսումը, հին սերտումը, հին մուշտրան, մենք պետք է փոխարինենք մարդկային գիտությունների ամբողջ պաշարը մեզ վերցնելու կարողությամբ և վերցնենք այնպես, որ կոմունիզմը ձեզ համար ինչ-որ սերտած բան չլինի, այլ դառնա ձեր մտածածը, լինի այն հետևությունները, որոնք անխուսափելի են ժամանակակից կրթության տեսակետով» (Լենին, Ընտիր երկեր, երկու հատորում, էջ՝ 843)։



Ավարտելով իր պատմական ճառը, Լենինն ասել է. «Այն սերունդը, որի ներկայացուցիչներն այժմ մոտ 50 տարեկան են, չի կարող հույս ունենալ, որ կտեսնի կոմունիստական հասարակությունը։ Մինչև այն ժամանակ այդ սերունդը կմեռնի։

Իսկ այն սերունդը, որն այժմ 15 տարեկան է, նա և՛ կտեսնի և՛ կկառուցի այդ հասարակությունը։

Եվ այդ սերունդը պետք է գիտենա, որ իր կյանքի ամբողջ նպատակն է այդ հասարակության կառուցումը» (Լենին, Ընտիր երկեր, երկու հատորում, էջ՝ 855)։

20 տարին, որ բաժանում է մեզ այն օրից, երբ արտասանվել է Վ. Ի. Լենինի այս պատմական ճառը, այդ լարված պայքարի և մեծագույն հաջողությունների շրջան է կոմունիստական հասարակության կառուցման գործում։ ՍՍՌՄ-ում հիմնականում կառուցված է սոցիալիզմը։ Մենք թևակոխել ենք սոցիալիզմից աստիճանաբար կոմունիզմին անցնելու շրջանը։

մարդյա հնգապատիկ պակաս: *Սա նշանակում է, որ երեխաների մոտ* չորս հինգերորդականը *և չափահասները* Ռուսաստանում զրկված են *ժողովրդական կրթությունից:*

*Այնպիսի վայրենի երկիր, որտեղ ժողովրդական մասսաները* այնքան կողոպտված են *կրթության, լուսավորության և գիտության իմաստով,—այդպիսի երկիրը Եվրոպայում ոչ մեկը չի մնացել,* բացի Ռուսաստանից» (*Լենին, հատ.* 16, *էջ* 410 *ռուս. հրատ*):

*Խոսելով հին դպրոցի մասին, Վլադիմիր Իլյիչը մատնանշել է, որ նա «միանգամայն տոգորված լինելով դասակարգային ոգով, միմիայն բուրժուազիայի երեխաներին էր գիտելիքներ տալիս: Նրա յուրաքանչյուր բառը կեղծված էր բուրժուազիայի շահերի օգտին»* (*Լենին, Ընտիր երկեր, երկու հատորում, էջ* 840):

*Չափազանց հետաքրքրություն է ներկայացնում ռուս մեծ գրող Մաքսիմ Գորկու հոդվածը, որը հրապարակվել է «Սամարսկայա գազետա»-ում* 1895 *թվի սեպտեմբերին:*

*Մաքսիմ Գորկին պատմում է իր զայրույթն այն մասին, որ սովորել ցանկացող մոտ* 300 *աղքատ երեխաներ դպրոցից*



*դուրս էին մնացել «տեղ չլինելու պատճառով»: Նա բերում է իր հետևյալ խոսակցությունը «քաղաքի հայրերից» մեկի հետ:*

*«Ի՞նչ պիտի անել հիմա այդ երեխաների հետ: Ո՞ւր ուղարկել նրանց,—հարցրի ես»:*

*Եվ Գորկին ստացել է այսպիսի պատասխան:*

*«Ո՞ւր: Այդ քաղաքային ինքնավարության իրավասությունից դուրս հարց է: Յուրաքանչյուր կարգին երեխա, հասկանալի է, հայրիկ ու մայրիկ ունի: Այդ մարդիկն էլ պետք է պատասխանեն ձեր հարցին... Այո—ս... Նրա՞նք են երեխաներին աշխարհ բերել: Մենք նրանցից այդ բանը խնդրե՞լ ենք: Այդպե՞ս է: Հիմա էլ... բարեհաճեցեք կառավարվել ձեր միջոցներով...*

*Բայց և այնպես ենթադրվում է, որ ինքնավարության օրգանը պարտավոր է որոշ չափով օժանդակել գրագիտության զարգացմանը...*

*— Այդ, ասենք, այդպես է, բայց դա լուրջ հիմքեր չունի: Գիտությունը դեռևս ճշգրիտ ու անվիճելիորեն չի որոշել գրագիտության անհրաժեշտությունն ու օգուտը: Կան նույնիսկ իմաստուն մարդիկ, ո-*

րանք ակնհայտնի կերպով բացասաբար են վերաբերվում գրագիտությանը... Կարելի է գալ այն համոզման, որ հենց գրագիտությունն է ամեն տեսակ անկարգությունների գլխավորագույն պատճառը» (Մաքսիմ Գորկի «Երիտասարդության և երեխաների մասին» էջ 14, հրատ. «Մոլոդայա գվարդիա», 1938 թ.):

Այո՛, իսկապես, գրագիտությունը, որը հնարավորություն է տալիս աշխատավոր երիտասարդությանը, ծանոթանալ Մարքսի ուսմունքի հետ, պրոլետարական ռևոլյուցիայի թեորիայի հետ, եղել է «ամեն տեսակ անկարգությունների գլխավորագույն պատճառը» բուրժուազիայի համար: Եվ բուրժուազիան արել է ամեն բան, որպեսզի պրոլետարական երեխաներին զրկի հենց այդ գրագիտությունից: Ճիշտ է, այն ժամանակը գործում էր և մի ուրիշ դպրոց, դասակարգային պայքարի դպրոցը, որը ռուս բանվորներին սովորեցնում էր ռևոլյուցիոն գրագիտությունը:

Սովետական Միությունը միակ երկիրն է աշխարհում, որտեղ կարելի է լիակատար կերպով կենսագործել կոմունիստական դաստիարակության գաղափարները, ամբողջ մարդկության երջանկության համար պայ-



քարող մարտիկների, բազմակողմանիորեն զարգացած մարդկանց դաստիարակությունը:

Սովետական կառավարությունը, բոլշևիկների պարտիան և անձամբ ընկեր Ստալինը, հսկայական հոգատարություն են ցուցաբերում երիտասարդության դաստիարակության գործին: Սովետական պետությունը չի խնայում ո՛չ մի ուժ, ո՛չ մի միջոց այն բանի համար, որպեսզի էլ ավելի մեծ բարձրության հասցնի ժողովրդական լուսավորության գործը:

ՀամԼԿԵՄ 8-րդ համագումարում (1928 թվի մայիսի 16-ին) ընկեր Ստալինն իր արտասանած ճառում ասաց.

«Մեր առաջ կանգնած է մի բերդ: Նա, այդ բերդը՝ կոչվում է գիտություն՝ իր գիտելիքների բազմաթիվ ճյուղերով: Այդ բերդը մենք պետք է նվաճենք ինչ գնով էլ լինի: Այդ բերդը պետք է նվաճի երիտասարդությունը, եթե նա ուզում է լինել նոր կյանքի կառուցող, եթե նա ուզում է դառնալ հին գվարդիայի իսկական փոխարինողը» (Լենին-Ստալին «Երիտասարդության մասին», էջ 338):

Շատ դարերի ընթացքում մարդկության լավագույն առաջավոր մտքերն երազել են

այնպիսի հասարակության մասին, որտեղ չեն լինի ո՛չ սարկություն, ո՛չ մարդու շահագործումը մարդու կողմից։

Այդ երազներն իրականացել են։ Եվ մեր առաջ, այժմ կանգնած է կոմունիստական հասարակություն կառուցելու մեծ խնդիրը, իսկ այդ անհնար է առանց կոմունիստական դաստիարակության։

«Կոմունիստական դաստիարակության հաջողություններից, այդ խոսքի լայն նշանակությամբ, կոմունիստական դաստիարակությունից, որ ընդգրկել է աշխատավորների ամբողջ մասսան և ամբողջ սովետական ինտելիգենցիան,—ամենից առաջ, այդ բնագավառում մեր ունեցած հաջողություններից է կախված մնացած բոլոր խնդիրների լուծումը»,—ասաց ընկեր Մոլոտովն իր զեկուցման մեջ Համ. Կ(բ)Պ 18-րդ համագումարում։

Իսկ ի՞նչ է նշանակում կոմունիստական դաստիարակություն։ Այդ նշանակում է մարդկանց դաստիարակել այնպես, որպեսզի նրանք նվիրեն իրենց բոլոր ուժերը, իրենց բոլոր գիտելիքներն ընդհանուր գործին։ Եվ միայն այն ժամանակ, երբ մենք կդաստիարակենք մարդուն, որն իր վրա նայում է ամենից առաջ իբրև կոլեկտիվի



անդամի, որ դնում է իր գործողությունների ամենից առաջ կոլեկտիվի շահերի տեսակետից,—այն ժամանակ մենք կարող ենք ասել, որ մենք իրականացնում ենք կոմունիստական դաստիարակությունը։

Կոմունիստական դաստիարակության իրականացման համար մեզ մոտ կան բոլոր հնարավորությունները։

Ստալինյան Կոնստիտուցիան ապահովում է բոլոր աշխատավորներին կրթության իրավունքը։ ՍՍՌՄ-ում սովորում են մոտ 40 միլիոն դպրոցականներ— բնակչության մեկ հինգերորդ մասը։ Իրականացնելով ընդհանուր տարրական կրթությունը, մեր երկիրը հաջող կերպով կատարում է պարտիայի 18-րդ համագումարի որոշումները՝ ընդհանուր յոթնամյա ուսուցման կիրառումը գյուղում և ազգային ռեսպուբլիկաներում և տասնամյա ուսուցումը՝ քաղաքներում և բանվորական ավաններում։ Այդպիսի վիթխարի ձեռնարկումն առաջին անգամ ռեալիզացիայի է ենթարկվում մարդկության պատմության մեջ։

ՍՍՌՄ-ում միմիայն 1933—1938 թ. թ. կառուցված է 20·607 դպրոց, որից 4·254-ը քաղաքներում և 16·353-ը գյուղական վայրերում։

Երեխաների բազմակողմանի կրթության ու զարգացման համար, Սովետական պետությունը բաց է թողնում հսկայական միջոցներ նաև երեխաների արտադպրոցական դաստիարակության համար: Երկրում կազմակերպված են 700-ից ավելի մանկական տեխնիկական կայաններ, գեղարվեստական ինքնագործունեության տասնյակ աներ, պիոներների 900 պալատ և տուն, հազարավոր մանկական գրադարաններ, կինո-թատրոններ և այլն:

Միանգամայն հասկանալի է, որ այսպիսի պայմաններում բարձրանում է շնորհալի, նախաձեռնող, տաղանդավոր երեխաների ու պատանիների ամբողջ մասսա:

Պատանի ավիամոդելիստները—պիոներները, դպրոցականները—կառուցում են ինքնաթիռների բարդ մոդելներ և նվաճում են միջազգային ռեկորդներ:

Մանկական կենտրոնական տեխնիկական կայանը, երեխաներից ստացել է 5 հազարից ավելի զանազան ռացիոնալիզատորական առաջարկներ:

Մոտ 4 հազար երեխաներ միայն 1939 թվին մտցված են Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսի «Պատվո գրքում»: Միմիայն 8 երկրամասերից



և մարզերից 2,5 հազար էքսպոնատներ գրանցված են Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսին, իսկ պատանեկական մի քանի խմբեր՝ ստացել են ցուցահանդեսի դիպլոմներ:

Ամբողջ աշխարհին հայտնի են մեր երկրի պատանի տաղանդները—միջազգային կոնկուրսներում հաղթող երաժիշտները—Էմիլ և Լիզա Գիլելսները, Յա. Զակը, Ռ. Տամարկինը և ուրիշները:

Հարյուրավոր երեխաներ— Սովետական Երկրի դպրոցականներ—որոնք դաստիարակված են առաջավոր սովետական ընտանիքներում, հանդես են բերել և հանդես են բերում իրենց իբրև խակական հերոսներ: Նրանք կանխում են գնացքների խորտակումները, փրկում են կոլխոզային ոչխարի հոտերը բուք ու բորանի ժամանակ, երևան են բերում կոլխոզային ունեցվածքի վնասարարներին և գողերին, օգնում են մեր պանծալի սահմանապահներին երևան բերելու լրտեսներին ու դիվերսանտներին սովետական սահմաններում:

«Ես վստահորեն եմ նայում ապագային և պարզ պատկերացնում եմ իմ կոչումը կյանքում: Այդ ինձ ուրախացնում է, հրճապուրում է, քաջալերում դեպի սխրա-

գործունեությունը, որովհետև ես գիտեմ, որ իմ աշխատանքը կմարմնավորվի Սովետական Երկրի աշխատանքի ընդհանուր սիմֆոնիայի մեջ և կլինի նույնպես օգտակար, ինչպես օգտակար են հանքափորների, կոլտնտեսականների, հողագործության վարպետների ստախանովյան ռեկորդները, սահմանապահների խիզախությունը»: Այսպես է գրում Սոնյա Գուսարովան, Կուրսկի մարզի դպրոցներից մեկի աշակերտուհին: Սակայն այդ նամակի տակ կարող էր ստորագրել ո՛չ միայն Սոնյա Գուսարովան: Այդ նամակի տակ մենք կարող ենք տեսնել տասնյակ հազարավոր անուններ, որովհետև այդպիսին է մեր երիտասարդության ընդհանուրի տրամադրությունը:

Եվ առավել վիրավորական է, երբ այդպիսի միջավայրում հանկարծ տեղի է ունենում խզում, ընդհատում:

ՀԱՄԿՍ-ի հունիսի 26-ի դիմումի մեջ ասված է, որ բանվորների ու ծառայողների գերակշռող մեծամասնությունն ազնըվորեն են վերաբերվում դեպի իրենց աշխատանքը: Սակայն 3—4 տոկոսը, գլխավորապես, երիտասարդ բանվորներից, որոնք վերջերս են եկել արտադրության մեջ, խախտում է Սովետական կառավա-



րության հրապարակած օրենքները: Հարկավոր է շատ լուրջ մտածել, ինչպես կարող է այսպես պատահել, որ դասալքեցին մարդիկ, որոնք սև անշնորհակալությամբ փոխհատուցեցին իրենց մեծ հայրենիքին: Այստեղ, ի հարկե, մեծ դեր են խաղացել դաստիարակության սխալներում եղած թերությունները:

Սովետական դպրոցը,—ասում էր Վլադիմիր Իլյիչը,—«երիտասարդությանը պետք է տա գիտության հիմքերը, տա կոմունիստական հայացքներ մշակելու հմտությունը, պետք է նրանցից կրթված մարդիկ պատրաստի: Դպրոցը պետք է այդ ժամանակամիջոցում, քանի դեռ մարդիկ այնտեղ սովորում են, նրանցից պատրաստի շահագործողներից ազատագրվելու համար մղվող պայքարի մասնակիցներ» (Լենին, Ընտիր երկեր, երկու հատորում, էջ՝ 851):

Իսկ շահագործողների լծից ամբողջ մարդկությունն ազատելու համար մղվող պայքարի մասնակիցներ դառնալու համար, հարկավոր է, որպեսզի մեր երեխաները հիանալի սովորեն և պատրաստված լինեն ապագա պրակտիկ գործունեության համար:

Մենք մինչև այժմ դեռևս չենք վերաց-

րել աշակերտների ոչ—առաջադիմությունը և երկտարեցիությունը։ Տասնյակ հազար երկտարեցիները—այդ ոչ միայն նյութական խոշոր կորուստ է պետությանը, այդ ոչ միայն բեռ է մեր պետական ժողովրդական բյուջեի համար, այլև դրանք տասնյակ հազար դպրոցականներ են, մեծ մասամբ անկազմակերպ, անդիսցիպլինար, որոնց հետ մենք շատ և շատ քիչ ենք զբաղվում։

Մեր երկրում այլևս անկարելի է հանդուրժել այդ բանը։

Դպրոցը, ծնողները, չեֆական ձեռնարկությունները, կոմերիտմիությունը, ամբողջ սովետական հասարակայնությունը պետք է հասնեն այն բանին, որպեսզի եկող ուսման տարում սովետական դպրոցում ոչ մի երկտարեցի չլինի։

Որպեսզի մեր երեխաները դառնան մեր սոցիալիստական հայրենիքի լիարժեք քաղաքացիներ, անհրաժեշտ է աշակերտներին լավագույն կերպով նախապատրաստել ապագա պրակտիկ աշխատանքային գործունեությանը։ Մեր սովետական դպրոցի սաները կդնան Փաբրիկաները, գործարանները, կոլխոզները։ Մեր դպրոցի պարտականությունն է՝ զինել նրանց գիտելիքներով և ունակություններով, նրանց այնպես



պատրաստել, որ նրանք կարողանային առավելին մտնել առաջավոր բանվորների, կոլխոզնիկների, ծառայողների շարքերը։ Շատ դպրոցներում ու ընտանիքներում նկատվող տենդենցը՝ կողմնորոշելու համարյա բոլոր երեխաներին, որ նրանք պետք է դառնան ինժեներներ, բժիշկներ, գյուղատնտեսներ, իրավաբաններ, մանկավարժներ, չի նպաստում սովետական դպրոցականներին սեր պատվաստելու դեպի բանվորների ու կոլխոզնիկների աշխատանքը, դեպի աշխատանքը, որն այնքան պատվավոր է մեր երկրում։ Դրա համար էլ անհրաժեշտ է հասնել այնպիսի դրության, որպեսզի երեխաների ուսուցումը կապված լինի կենսական պրակտիկայի հետ։

Ամբողջ կրթությունը դպրոցում և ընտանիքում հիմնված պետք է լինի սովետական հասարակության մեծ նպատակներն աշակերտների կողմից պարզ գիտակցելու վրա, հասարակության առաջ իրենց պարտականությունները կատարելու վրա և պատասխանատվություն զգալու իրենց վարքի համար։

Մեր դպրոցականները պետք է ակտիվ մասնակցություն ունենան արտադասարանային, արտադպրոցական և հասարակակա-

նորեն օգտակար աշխատանքում: Այդպիսի աշխատանքներն անսպառ աղբյուր են. մերձ դպրոցական տեղամասը, տեխնիկական խմբակը, գրադարանը, պիոներական ջոկատը, աշկոմը, անգրագիտության վերացումը մոտակա տների բնակչության մեջ: Եվ երբեք չի կարելի ասել, որ հասարակական աշխատանքը կարող է որևէ կերպ կտրել ուսումից, խանգարել նրան: Ընդհակառակը: Ճիշտ, խելացի կերպով կազմակերպված հասարակական աշխատանքն է միայն օգնում լավ սովորելուն:

Այսպես օրինակ. Մոսկվայում, Դանիլովկայում, գտնվում է № 545 դպրոցը: Քսան կոմերիտականներ, 9-րդ, թե 10-րդ դասարանի աշակերտներ, 1939—1940 ուստարվա ընթացքում իբրև ագիտատորներ աշխատել են ընտրական տեղամասում: Ընտրողները շատ են հետաքրքրվել իրենց ագիտատորների դպրոցական հաջողություններով: Եվ այս բանն այնպիսի տրամադրություն է ստեղծել երիտասարդ ագիտատորների մեջ, որ դիսցիպլինայի գծով վատ թվանշան կամ նկատողություն ստանալը նրանց համար դարձավ պարզապես ինչ-որ անհնարին և անիմաստ:



Այսպես էր գործը և մյուս հասարակական աշխատանքի հետ՝ պիոներ ջոկվարի աշխատանքը: Մի անգամ 8-րդ դասարանի աշակերտուհի Լյուսյա Տրիպոլսկայան համրահաշվից վատ թվանշան ստացավ: Կասկարմիր կտրած, նա վազ է տալիս իր դասարանի ղեկավարուհու մոտ. «Թույլ տվեք այդ թվանշանը մրցման տախտակի վրա չգրել: Այդ բանն այլևս կյանքումս չի կրկնվի, իսկ եթե իմ պիոներները տեսնեն այդպիսի թվանշան, ես կմեռնեմ ամոթից»: Իսկապես որ, վատ թվանշանն ընդմիշտ անհետացավ Լյուսյայի օրագրից:

Հասարակական աշխատանքը զարգացնում է պատասխանատվության զգացմունքը հանձնարարված գործի նկատմամբ, զարգացնում է ինքնուրույնությունը, հաստատակամությունը: Նա սովորեցնում է աշակերտին իր վրա նայել իբրև ընդհանուր գործի ինչ-որ պտուտակի, սովորեցնում է անձնական շահերը ընդհանուրին ենթարկել:

Ուսումը, աշխատանքը, հասարակական աշխատանքը— ահա այն տարրերը, որոնք դրված են կոմունիստական դաստիարակության հիմքում:

Սակայն միանգամայն պարզ է, որ դըպ-

րոցը մենակ չի կարող անել այս բանը: Երեխան դպրոցում անց է կացնում օրական 5—6—7 ժամ: Մնացյալ ժամանակ նա տանն է անցկացնում: Նա դպրոց է մտնում 8 տարեկան հասակում և իր հետ բերում է ինչ-որ սովորույթներ, վարքի ինչ-որ նորմաներ: Տունը, ընտանիքը, փողոցը— ահա դաստիարակության երկրորդ գործոնը: Ահա երկրորդ ուժը, որը ձևավորում է մարդու աշխարհայեցողությունը, կենցաղը, ամբողջ կերպարանքը: Եվ երբ մենք խոսում ենք նոր մարդու դաստիարակության մասին, մենք ամենից առաջ պետք է խոսենք ընտանիքի ու դպրոցի համատեղ աշխատանքի մասին:

Սովետական պետությունն ամենափոքր չափով անգամ չի ազատում ո՛չ մորը, ո՛չ հորը երեխաների մասին ունեցած հոգատարությունից: Սովետական պայմաններում ծնողները— դրանք հասարակական դաստիարակներ են, որոնք պարտավոր են պատրաստել լիարժեք սովետական քաղաքացիներ: Սրանումն է նրանց պարտքը, սրանումն է նրանց հպարտությունը: Սոցիալիստական հասարակությունն ստեղծում է ամենալավ պայմաններն երեխաների դաստիարակության համար ոչ միայն դպրո-



ցում, այլև ընտանիքում: Կանանց իրավունքի հավասարեցումը տղամարդուն, հանդիսանում է հիմնականը՝ առողջ, բովանդակալից ընտանեկան կյանքի համար, մասսաների նյութական ու կուլտուրական աճը, ստալինյան հոգատարությունն երեխաների մասին, որը կենսագործվում է մեր երկրում,— այս ամենը հնարավորություն են տալիս հասնել դաստիարակությունը սովետական ընտանիքում չտեսնված բարձրության:

Եվ հազարավոր բանվորների, կոլխոզնիկների, գիտնականների, գրողների սովետական ընտանիքներն իրենց երեխաներին դաստիարակում են իբրև կոմունիստական հասարակության ապագա ակտիվ կառուցողներ: ՌՍՖՍՌ Գերագույն Սովետի դեպուտատ ընկեր Լադոդայի որդիների, Միխեևների ընտանիքը, որից դուրս է եկել «եղբայր Միխեևների տանկի» անձնակազմը, հռչակավոր դոմենշչիկ ընկեր Կորոբովի ընտանիքի անունները հայտնի են ամենքին: Սովետական Միության հերոս, մահացած օդաչու Բաբուշկինի որդին թույլատվություն է խնդրում ժամանակից առաջ օդաչուական դպրոց մտնելու մասին, որպեսզի շարունակի իր հոր փառապանծ ուղին:

Հին օդաչու-չքանչանակիր ընկեր Գրիզոդուբովը ամբողջ երկրի հետ միասին իրավամբ հպարտանում է իր հերոս-դստրով՝ օդաչուհի Վալենտինա Գրիզոդուբովայով, որի մեջ նա մանկությունից աշխատել է դաստիարակել խիզախություն, նպատակամիտում և կամքի ուժ։

Ստալինգրադի մանկինստիտուտում աշխատում են մարդ ու կին Օ-ն։ Նրանք երկուսն էլ շատ են աշխատում, բայց այդ չի խանգարում սքանչելի կերպով դաստիարակելու իրենց երկու տղաներին— Վլադիկային և Ալյոշային։ Իրենց երեխաների դաստիարակությունը ծնողները դիտում են իբրև իրենց կարևորագույն պարտավորությունը, նրանք լրջորեն են վերաբերվում երեխաների դաստիարակության վերաբերող իրենց յուրաքանչյուր քայլին։

Ծնողները շատ ուշադրություն են դարձնում երեխաների կրթությանը։ Նրանց մեջ զարգացնում են դիտողականություն, խելամտություն և խոհականություն։ Ծնողները հաճախ երեխաներին պատմում կամ կարդում են հեքիաթներ ու պատմվածքներ, հաճախ հայրը բարձրաձայն կարդում է թերթերից երեխաներին հասկանալի հա-



ղորդագրություններ, հատկապես Կարմիր Բանակի կյանքի մասին։

Սերգեյ Ցակովլեվիչ և Տաիսա Միխայլովնա Պ-ի երեք երեխաներն էլ սովորում են Վոլոգդա քաղաքի 22-րդ դպրոցում։ Երեխաներն այս ընտանիքում դաստիարակվում են այնպես, ինչպես պետք է լինեն սովետական երեխաները,— ազնիվ, ճշմարտախոս, ջանասեր, հեզ, քաղաքավարի, ճշտապահ։ Այս թանկարժեք հատկությունները ծնողները պատվաստում են իրենց երեխաներին ոչ դեպքից-դեպք, այլ հարատև, օր առ օր։ Ծնողները բացատրում են երեխաներին ոչ միայն այն, ինչը չի կարելի անել, այլ ամենից առաջ այն, թե նրանք ինչը և ինչպես պետք է կատարեն։

Որպեսզի երեխաները չաճեն փափկասուն գործավախությամբ, չմեծանան իբրև կյանքին անհարմարվողներ, մայրը սիստեմատիկ կերպով նրանց վարժեցնում է աշխատանքի։ Երեխաներն ըստ կարողության պարապում են ֆիզիկական աշխատանքով՝ տնտեսության գծով։ Երեք երեխաներն էլ գերազանց են սովորում։

Շատ ծնողներ ոչ միայն ճիշտ են դաստիարակում իրենց երեխաներին, այլև ակտիվորեն օգնում են դպրոցին։ Ստալինգրա-

ղում գարաժի աշխատող, պարտիայի թեկնածու Տ-ն՝ դպրոցի ծնողական կոմիտեի նախագահ է: Նա ստեղծել է ամուր ծնողական ակտիվ, որն ուսումնասիրում է երեխաների դաստիարակության պայմաններն ընտանիքում և ցույց է տալիս հարկավոր օգնություն: Դպրոցը, շնորհիվ հասարակության ակտիվ օգնության, քաղաքում բռնել է առաջավոր տեղերից մեկը:

Սակայն ոչ բոլոր ծնողներն են գիտակցում իրենց պատասխանատվությունը երկրի առաջ՝ իրենց երեխաների դաստիարակության համար: Մի քանի ընտանիքներում դեռևս կան ընտանեկան դաստիարակության նկատմամբ հրեշավոր հայացքների մնացուկներ, իսկ այլ ընտանիքներում ծնողները սքանչելի գիտելիքներով, թե ինչպես պիտի դաստիարակել, բոլորովին ուշադրություն չեն դարձնում իրենց երեխաների վրա:

... Վալոդյան նշանավոր հայր ունի: Խելոք, իր վերաբերմունքի մեջ մարդկանց նկատմամբ մեղմ, հարկավոր գործի կատարման ասպարեզում հաստատակամ: Նա մեծ գործարանի դիրեկտոր է: Հայրը որդուն համարյա չի տեսնում, հաճախ գործարանից տուն գալով, նա ոտքի մատների վրա



մտնում է Վալոդյայի սենյակը, երբ նա արդեն քնած է լինում: Նայելով գրքերին, տետրակներին, նա կնճռոտում է դեմքը, տեսնելով բազմաթիվ սխալներ, և հառաչելով դուրս է գալիս, իր հետևից ծածկելով դուռը: Նրան վաղուց տանջում է այն, որ Վովան վատ է սովորում: Եվ ինչ է հարկավոր նրան, ինչը չի բավականացնում նրան: Ամեն ինչ կա, միայն հարկավոր է սովորել: Վերջերս հայրը պատահաբար և առաջին անգամ իմացավ, որ Վլադիմիրը ոչ մի հասարակական աշխատանք չի տանում, չնայած նա կոմերիտական է, որ նա երեկ դպրոցում չի եղել, քանի որ գնացել է ֆուտբոլային խաղամրցմանը, որ ընդհանրապես նա հաճախակի բաց է թողնում դասերը: Հայրը որոշում է վաղն և եթ գնալ դպրոց: Սակայն վրա հասավ «վաղը» գործարանի իր անհետաձգելի գործերով, իսկ Վալոդյային սկսեցին խղճալորեն խայտառակել դպրոցում: «Կմեծանա, կխելոքանա», — մխիթարեց իրեն հայրը:

Մինսկ քաղաքի դպրոցներից մեկի աշակերտը վատ էր սովորում, հաճախակի չարություններ էր անում դասերի ժամանակ, հակաճառում էր ուսուցիչների հետ: Ուսուցչուհի Լ.-ն գնում է այն կազմակեր-

պուԹյունը, որտեղ աշխատում է երեխայի մայրը և նրան հրավիրում է դպրոց, քանի որ մայրը դպրոց այցելելու բազմիցս եղած հրավերներին չէր պատասխանել։

Ուսուցիչները ցանկանում էին պատմել մորը երեխայի մասին եղած ճշմարտու-Թյունը, խորհրդակցել, Թե՝ ինչպես պետք է դաստիարակել դպրոցականին ընտանի-քում։ Սակայն մայրը նեղացած, լսելով մի քանի խոսքեր, խիկույն սկսում է առարկել. «Ձեմ կարող հավատալ ձեզ, որ իմ որ-դին այնպես անդաստիարակ լինի։ Այդ-դուք դուր եք խոսում։ Նա տանը ունի բո-լոր հարմարուԹյունները լավ ուսման ու հանգստի համար,— առանձին սենյակ, հե-ծանիվ, պատեֆոն, անհրաժեշտ դասագրը-քեր, բոլոր ձեռնարկները։ Մենք նրան շատ լավ ենք դաստիարակում, հավանաբար նը-րան դպրոցն է փչացնում»։

Ուսուցիչներն աշխատում են համոզել մո-րը, որ նա սխալ կարծիք ունի, բայց ամեն ինչ իզուր է անցնում։ Նա մինչև վերջը չի լսում նրանց և դեմոնստրատիվ կերպով Թողնում է դպրոցը, անտեղի կերպով վի-րավորելով ուսուցիչներին։

Իսկ մյուս օրը կարելի եղավ լսել, Թե



ինչպես աշակերտ Վ–ն դասարանի իր ըն-կերներին պատմում էր.

— Իմ մաման երեկ լավ կերցրեց ուսու-ցիչներին։

Զարմանալի չէ, որ մոր այսպիսի վար-մունքից հետո, օգտվելով նրա ներողամը-տուԹյունից, Վ–ն շարունակում է իրեն ան-վայել պահել, անկարգ բաներ անել, չի լսում դասատուներին, հաճախ բաց է Թող-նում դասերը, չի կատարում տնային առա-ջադրանքները։

Կան վերջապես ծնողներ, որոնք երեխա-ների դաստիարակուԹյունը համարում են իրենց հարազատ գործը, սակայն ոչ խելա-ցիորեն են կենսագործում այն և երեխա-ներին ճիշտ չեն դաստիարակում։

Նրանցից ոմանք երեխաների հետ վերա-բերվում են չափազանց խիստ, դիմում են ֆիզիկական պատժի անԹույլատրելի չափե-րի, ուրիշներն ընդհակառակը, ներողամիտ են լինում նրանց բոլոր կամայականու-Թյունների նկատմամբ, չափից դուրս գո-վում են իրենց երեխաներին, դաստիարա-կում են նրանցից եսասերներ, որոնք անըն-դունակ են համառ աշխատանքի և դիսցիպ-լինայի։

Կոլյա Ու–ն երրորդ տարին է նստում 6–րդ

դասարանում: Նրա անառաջադիմության պատճառն ընտանիքում նրա նկատմամբ եղած կոպիտ, դաժան վերաբերմունքն է: Առաջին իսկ վատ թվանշանից հետո հայրն սկսում է գործադրել զանազան ռեպրեսիաներ նրա նկատմամբ: Յուրաքանչյուր քայլափոխում ընտանիքում ընդգծում էին նրա թերությունները: Կոլյան սկզբում շատ հիվանդագին արձագանքեց մեծերի կողմից նրա նկատմամբ այդպիսի վերաբերմունքին, իսկ հետագայում նա ինքն իրեն ազատ ըղղաց, նա կորցրեց հետաքրքրությունն ուսման նկատմամբ, դարձավ ջղային, կոպիտ, դասերին անուշադիր և տանը չէր պարապում:

Մոսկվայի դպրոցներից մեկի 3-րդ դասարանի աշակերտ Միշա Զ-ի ծնողները ձգտում են, իրենց արտահայտությամբ, իրենց երեխայի կյանքն երջանիկ դարձնել: Նրանք գնում են Միշայի համար ամեն բան, ինչ նրա խելքին փչում է: Տանը ընդառաջում են նրա բոլոր ցանկություններին: Նա սովորում է հազիվ-հազ՝ «միջակով»: Երբ ուսուցչուհին դասարանում խոսքեր է գրել տալիս կամ օրինակներ՝ լուծելու, Միշան հայտարարում է, որ այդ բանը տխուր է: Մայրը ներողամտորեն ծիծա-



ղում է, երբ տետրակում «վատ» է դըրվում:

— Ինչ առանձին բան կա որ,— ասում է նա,— ամենքը հո չե՞ն կարող գերազանցիկներ լինել:

Սակայն, փոխանակ սովորելու Միշային գոնե մի կերպ պարապել, ծնողներն սկըսում են վճարել նրան թվանշանների համար: Սկզբում պրծնում են կոնֆետներով ու շոկոլադով, սակայն որդին համն առնում է և դադարում է հետաքրքրվել այդպիսի մանրուքներով: Շուտով Միշայի մոտ երևան է գալիս Փոստապարատ, հետո ինչ-որ անսովոր հեծանիվ, իսկ այժմ ծնողները մտածում, տանջվում են էլ ինչ նվիրել երեխային, որպեսզի նա սովորի:

Հազիվ թե կարիք կա ապացուցելու՝ թե ումն են աճեցնում այդպիսի ծնողները: Նրանց երեխաները դուրս կգան կամակոր, ատախոս, կյանքին չհարմարված մարդիկ: Միշան ծույլ կդառնա և, վարժված լինելով ծնողներից, կսկսի որոնել ավելի հեշտ, ավելի հասարակ գործ:

Իսկ ծնողները կզարմանան, թե ինչո՞ւ այսպես եղավ: Չէ որ մենք արել ենք ամեն ինչ՝ մեր երեխաների համար: Այո՛, դուք ամեն ինչ արել, դուք չափազանց երևս եք

տվել ձեր երեխաներին: Դուք նրանց առաջ չեք դրել և ոչ մի խնդիր, նրանց մեջ չեք զարգացրել հաստատակամություն, ձգտում դեպի ուսումը, չեք վարժեցրել նրանց սիրել և հարգել աշխատանքը: Եվ երեխաները շնորհակալ չեն լինում ձեզ այդպիսի «հոգատարության» համար:

Շատ վատ են ազդում երեխաների վրա ծնողների տգեղ օրինակները: Այն, ինչ-որ ամեն օր կատարվում է երեխայի աչքի առաջ, անջնջելի հետք է թողնում նրա վրա:

Ծնողները հաճախ չեն նկատում, որ նրանց հայհոյանքները, փոխադարձ վիրավորանքները և նույնիսկ ոչ-մեծ վեճերը երեխաների ներկայությամբ, դցում են դպրոցականների աչքում մեծերի հեղինակությունը, նրանց առիթ են տալիս կոպիտ պահելու իրենց: Մի հայր դանդատվում է դասարանային ղեկավարին, որ իր որդի Յաշան սկսել է վինթի պառնալ և շատ կոպիտ է վերաբերվում մոր հետ: Երբ դասարանային ղեկավարն ավելի մոտիկից է ծանոթանում ընտանիքի հետ, ցույց է տալիս, որ տղան այդ «հատկությունը» փոխ է առել հորից:

Շատ հաճախ վատ ազդեցությունը թափանցում է փողոցից և բոլորովին խեղ-



դում է երեխային: Այդ բանին հակադրել կարելի է միայն այն ժամանակ, երբ ծնողները լավ գիտեն, թե ում հետ է ընկերություն անում նրանց երեխան, որտեղ են լինում նրանք, ինչ են անում:

Վերջերս Մոսկվա քաղաքի ժողովրդական դատարաններից մեկում քննության առնըվեց 9-րդ դասարանի աշակերտ Յուրի Տ-ի գործը: Նրան բռնել էին չուկայում, երբ նա փորձ էր արել գողանալու կանացի մի պայուսակ: Յուրին մի խոշոր բժշկի որդի է, նա շրջապատված էր յուրահատուկ «հոգատարությամբ»: Մայրը, մի հիվանդ կին, ամեն օր մինչև ուշ գիշեր սպասում էր որդուն, որպեսզի ընթրիք տաքացնի նրա համար: Առավոտները նա անպայման իր անկողնում գտնում էր խնձոր և կարկանդակ: Ծնողները չափազանց շատ հետաքրքրքրվում էին իրենց որդու դեմքի գույնով, քաշով, բայց միշտ մոռանում էին հարցնել, թե որտեղ է նա լինում, ումն է հանդիպում, ինչու ուշ է վերադառնում տուն: Յուրան տեսնելով այսպիսի անհսկողություն, սկսեց հաճախակի բաց թողնել պարապմունքները, ձևի համար գրքեր էր վերցնում իր հետ, իսկ ինքը գնում էր կինո: Այստեղ նա հանդիպում էր նոր «բարե-

կամների» ,որոնք նրան փող են պարտքտա-
լիս տոմսի համար, այս հյուրասիրում են
գինիով և վերջացնում են նրանով, որ ներ-
գրավում են նրան գողությամբ պարապող
խմբի մեջ:

Կարիք չկա թվելու նման օրինակներ:
Միանգամայն պարզ է, որ այս բոլոր դեպ-
քերում մեղավոր են և՛ դպրոցը, և՛ ծնող-
ները, իսկ առաջին հերթին իհարկե
ծնողները, որոնք պատասխանատու են ե-
րեխաների դաստիարակության համար:

Ամուսնության, ընտանիքի և խնամակա-
լության մասին օրենսգրքի 41-րդ հոդվածը
նախատեսում է, որ «ծնողները պարտավոր
են հոգ տանել անչափահաս երեխաների
մասին, հատկապես նրանց դաստիարակու-
թյան մասին և պատրաստմանը՝ հասարա-
կական օգտակար գործունեության հա-
մար»:

Կառավարության կողմից հրատարակված
ընդհանուր պարտադիր ուսուցման օրենքը
ծնողների վրա պատասխանատվություն է
դնում նրանց երեխաների ուսուցման հա-
մար և իրավունք է տալիս իշխանության
տեղական օրգաններին, երեխաներին սովո-
րեցնելու պարտավորությունից հրա-



ժարվող ծնողներից համապատասխան ադ-
մինիստրատիվ դանձումներ կատարել:

ՍՍՌՄ Ժողկոմսովետի և ՀամԿ(բ)Պ ԿԿ-ի
1935 թվի մայիսի 31-ի որոշումը երեխա-
ների անապաստանության և ոչհսկողու-
թյունը լիկվիդացիայի ենթարկելու մասին,
նույնպես ընդգծում է ծնողների պատաս-
խանատվությունը երեխաների դաստիա-
րակման համար և իրավունք է տալիս մի-
լիցիայի օրգաններին տուգանքի ենթարկել
ծնողներին նրանց երեխաների կռվարարա-
կան և խուլիգանական վարմունքի համար,
իսկ դատական օրգաններին իրավունք է
տրվում, վերցնել երեխաներին այն ծնողնե-
րից, որոնք չեն ապահովում երեխաների
վարքի հսկողությունը, տեղավորելով այդ-
պիսի երեխաներին մանկատանը, ի հաշիվ
ծնողների:

Այդպիսին է առաջավոր և մարդասիրա-
կան սովետական օրենսդրությունը, որը
լուծում է ծնողների վերաբերմունքի հար-
ցը երեխաների նկատմամբ, բացառապես
ելնելով երեխաների շահերի տեսակետից:

Փորձենք մի քանի արդյունքները հանրա-
գումարի բերել: Ի՞նչ պետք է անի ընտանի-
քը, ինչպես նա պետք է դպրոցի հետ հա-

մատեղ պայքարի երեխաների ճիշտ դաստիարակության համար։

Վաղ մանկությունից, իբրև կանոն, երեխաները միշտ ձգտում են նմանվել ծնողներին, նրանք աշխատում են ամեն բանում նրանց նմանվել։ Դրա համար էլ ծնողները պարտավոր են, ամենից առաջ, բոլոր խնդիրներում դրական օրինակ հանդիսանալ իրենց երեխաների համար։ Լավ օրինակը դաստիարակչական ներգործման խոշոր ուժ է հանդիսանում։

Կարլ Մարքսը ջերմորեն սիրում էր յուր ընտանիքը և հոգ էր տանում նրա մասին։ Զբաղված լինելով մեծագույն աշխատանքով, նա ժամանակ էր գտնում խաղալ երեխաների հետ, կարդալ նրանց հետաքրքիր հեքիաթներ, ինքն էր հորինում հեքիաթներ երեխաների համար և բարձրաձայն ընթերցում էր։

Այդ մի համերաշխ ընտանիք էր, որտեղ ամենքը սիրում էին մեկ մեկու, կարողանում էին գնահատել և հարգել բարեկամներին և կրքոտ կերպով ատում էին ռեվոլյուցիայի թշնամիներին։ Ահա թե ինչ է պատմում իր հիշողություններում Կարլ Մարքսի աղջիկը, Էլեոնորա Մարքս Էվելինգը․



«...Ամենից սիրելին Մարքսի համար երեխաների հետ շփվելն էր։ Այո, երեխաները նրանից ավելի լավ խաղընկեր չունեին...

Մավրը (Մարքսի ընտանեկան մականունը— ծանոթ. խմբագրության) նույնպես սովորաբար սիրում էր բարձրաձայն գրքեր կարդալ իր երեխաների համար...

Զրուցելով իր դստրիկի հետ գրքերի մասին... նա ցույց էր տալիս նրան, թե ինչպես պետք է գտնել ամենագեղեցիկը և լավագույնն այդ գործերի մեջ... Նա սովորեցրեց նրան մտածել և հասկանալ...

Ես հիշում եմ նույնպես, թե ինչպիսի անսահման համբերությամբ և հեզությամբ Մավրը պատասխանում էր իմ բոլոր հարցերին... Մավրը երբեք չէր դանդաղվում այն բանի համար, որ ես նրան կտրում եմ աշխատանքից, չնայած նրան, թերևս, շատ էր խանգարում միշտ շաղակրատող մանկիկների ներկայությունը, երբ նա աշխատում էր յուր մեծ աշխատությունների վրա։ Սակայն նա երբեք թույլ չէր տալիս, որ երեխաների մեջ միտք հղանար, որ իբր թե ինքն արգելք էր հանդիսանում հորը...

Այսպիսի իդեալական բարեկամ էր Մավրը

մ ամբողջ երեխայական և պատանեկական
արիների ընթացքում»: («Հիշողություն-
եր Մարքսի մասին», էջ 140—144, հրատ.
Մոլոդայա գվարդիա»-ի, 1940 թ.):
Ծնողները պետք է ճանաչեն իրենց երե-
խաներին, ուսումնասիրեն նրանց շահերը,
ընավորության առանձնահատկությունները,
հետևեն նրանց ցանկություններին, ձգտում
ներին: Երեխաների նկատմամբ այդպիսի
վերաբերմունքի փայլուն օրինակ կարող են
ծառայել Լենինի ծնողները— Իլյա Նիկոլա-
եվիչը և Մարիա Ալեքսանդրովնա Ուլյա-
նովան:

Աննա Իլյինիչնան իր հիշողություններում
պատմում է, որ նրանց ծնողները միշտ—
մանրամասն հետաքրքրվել են ուսման մեջ
իրենց երեխաների առաջադիմությամբ: Հե-
տեվում էին այն բանին, որպեսզի նրանք
ճշտապահորեն պատրաստեն դասերը: Մա-
րիա Ալեքսանդրովնան երեխաներին սովո-
րեցնում էր ոտանավորներ, երգեր: Իլյա
Նիկոլաեվիչը սիրում էր իր ազատ ժամա-
նակն անցկացնել ընտանիքում, զբաղվել ե-
րեխաների հետ, պատմում էր նրանց հե-
քիաթներ, նրանց հետ շախմատ էր խա-
ղում, որը նա ինքն էր չախրել տախտակի սե-
ղանի վրա: Լենինի ծնողները շատ լավ գի-



տեին իրենց երեխաների շահերը, բնավո-
րության առանձնահատկությունները և ըն-
դունակությունները: Դրա համար էլ նրանք
միշտ հասկանում էին նրանց: Նրանք երեխա-
ների մեջ դաստիարակում էին հեզություն,
իրանց վրա համառ աշխատելու ունակու-
թյուն և ապագայում իրենց ժողովրդին
օգտակար լինելու ձգտում:

Շատ կարևոր է, որպեսզի ծնողներն իրենց
ամենօրյա հետաքրքրությամբ՝ դպրոցա-
կանների կյանքի և մտքերի նկատմամբ,
իրենց նրբազգացության և ընկերական
վարմունքով կարողանային նվաճել իրենց
որդու, կամ աղջկա վստահությունը, որպես-
զի նրանք առաջին հերթին նրանց հետ
բաժանեին իրենց մտքերն ու ցանկություն-
ները:

Դրա համար հայրը և մայրը պարտավոր
են ուշադրությամբ լսել իրենց երեխանե-
րին, լրջորեն և անկեղծաբար վերաբերվել
այն ամենին, ինչ որ նրանք պատմում են,
հարգանքով վերաբերվեն նրանց հարցերին
և հետաքրքրությանը:

Գնդապետ Կ–ն շատ զբաղված է իր աշ-
խատանքում, այնուամենայնիվ նա ժամա-
նակ է գտնում, որպեսզի ամեն օր հարցա-
քննի իր աղջկան՝ Լիդային, նրա ուսման

մասին, այն մասին, թե ինչ է նա կարդում, պատրաստե՞լ է արդյոք դասերը: Հայրն ուշադիր է նրա ընկերուհիների նկատմամբ, նա հետաքրքրվում է Լիդայի կյանքի բոլոր կողմերով, և Լիդան գնահատում է այդ բանը: Լիդան արդեն 9-րդ դասարանում է, նա իր բոլոր տպավորությունները բաժանում է իր հոր հետ, խորհրդակցում է նրա հետ: Հայրը գիտի Լիդայի բոլոր ապրումները, նրա ներքին աշխարհը, և այս բանն օգնում է նրան ճիշտ դաստիարակել աղջկան:

Իր գիտակցական կյանքի առաջին իսկ օրերից երեխան պետք է զգա, որ նա, այդ փոքր կոլեկտիվի— ընտանիքի անդամն է և պետք է կատարի այդ կոլեկտիվում որոշ պարտականություն: Հավաքել անկողինը, ամանները լվանալ, հավաքել սենյակը, վերցնել փոշին— այսպիսի աշխատանք լիովին հնարավոր է և երեխային սովորեցնում է հարգանքով վերաբերվել դեպի աշխատանքը: Սա բոլորովին չի նշանակում, որ երեխայի վրա պետք է գցել բոլոր տնային աշխատանքները: Ամենևի՛ն ոչ: Սակայն սա նշանակում է, որ յուրաքանչյուր պատանի, յուրաքանչյուր աղջիկ պետք է կա-



րողանա անել ամեն բան, և այդ բանը պետք է սովորի մանկությունից:

Հայտնի տաղանդավոր մանկավարժ և գրող Ա. Ս. Մակարենկոն բացառիկ խոշոր նշանակություն էր տալիս աշխատանքային դաստիարակությանը:

Ա. Ս. Մակարենկոն չէր պատկերացնում ճիշտ սովետական դաստիարակություն՝ առանց աշխատանքային ունակությունների դաստիարակմանը: Նա համառորեն հանձնարարում էր ծնողներին՝ երեխաներին վարժեցնել աշխատանքին: «Զրույցներ ծնողների հետ» հոդվածներից մեկում, որը նվիրված էր աշխատանքի մեջ դաստիարակմանը, նա ընդգծում է, որ երեխաների ընտանեկան կյանքում աշխատանքային մասնակցությունը պետք է սկսվի շատ վաղ, որ նա պետք է սկսվի խաղով:

Ա. Ս. Մակարենկոն հանձնարարում է ծնողներին վաղ հասակից երեխաներին վարժեցնել այն բանին, որ նրանք պատասխանատու լինեն խաղալիքների անվթարության համար, այն վայրի մաքրության և կարգ ու կանոնի համար, որտեղ գտնվում են խաղալիքները և որտեղ նրանք խաղում են: Երեխայի աճման զուգընթաց, աշխատանքային հանձնարարությունները

պետք է բարդացվեն։ Վարժեցնելով երեխայի աշխատանքի, հարկավոր է նրա մեջ դաստիարակել պատասխանատվություն՝ աշխատանքի կատարման և նրա որակի համար։

Անհրաժեշտ է նույնպես առաջին իսկ օրերից երեխային սովորեցնել բացարձակ ճշմարտությանը։ «Ինչ որ դու կատարում ես — գիտակցի՛ր։ Այսպես են վարվում բոլոր խիզախ, ազնիվ մարդիկ»։ Այս բանը պետք է երեխայի մեջ միս ու արյուն դառնա, պետք է դառնա նրա անկապտելի հատկանիշը։ Իսկ դրա համար, ամենից առաջ, հենց ընտանիքում պետք է բացարձակորեն տիրապետի ճշմարտությունը։

Երեխան պետք է իմանա, թե ինչ են նրանից պահանջում, պետք է պարզ իմանա, թե ինչը «կարելի է» և ինչը՝ «չի կարելի»։ Այս «չի կարելին» կարող է բոլորովին շատ չլինել, սակայն դրանց կատարումը պետք է պահանջել անառարկելիորեն։ «Չի կարելին» բոլորովին չի նշանակում, որ երեխան դրված է ինչ որ վանդակի մեջ։ Ո՛չ։ Թող նա վազ տա, ցատկոտի, թող նա վայր ընկնի, վնասվի։ Ոչ մի տարօրինակ բան չի պատահի, եթե նա նույնիսկ տնազ անի։ Սակայն թող հաստատապես իմանա, որ չի



կարելի փոքրերին և թույլերին վիրավորել։ Որ չի կարելի ջարդել և փչացնել իրերը։ Յուրաքանչյուր «չի կարելին» պետք է երեխային լինի հասկանալի և համոզեցուցիչ։

Վերջերս լույս տեսավ Ն. Պֆլաումերի չափազանց հետաքրքիր գիրքը՝ «Իմ ընտանիքը»։ Այդ գրքում հեղինակը բերում է մի օրինակ այն բանից, թե ինչպես յուրաքանչյուր նկատողություն պետք է լինի ակնառու, զգալի։ Ավագ որդի Սերյոժան արհամարհական է վերաբերվում դեպի իր քրոջ՝ Ժենյային։ Նա ինչ-որ երկար ժամանակ չէր կարողանում հասկանալ բավական ոչ բարդ մի հանձնարարություն։ Սերյոժան կատակում էր։

«Որտեղի՞ց, որտեղի՞ց,—ծաղրում էր նա։—Զինաստանից է եկել...

— Իսկ ո՞րտեղ է Զինաստանը,—անվրդով հարցնում էր Ժենյան։

— Ա՛յ քեզ հիմար,— վեր էր թռչում Սերյոժան։

— Սերգեյ,— կանչեց հայրը։ Այստե՛ղ եկ։

Սերյոժան մոտենում է։

— Նկարագրի՛ր ինձ ուղղանկյունային եռանկյունի 5 սանտիմետր հիմք ունեցող,—

գործարար տոնով ասաց Դավիդ Իվանովի-չը։

— Նկարագրե՞լ... ի՞նչը,— զարմացած դանդաղ արտասանեց տղան։

— Ինչպե՞ս թե ինչ, ինչ,— ձեռ էր առնում նրան հայրը։— Ուղղանկյունային եռանկյունի։

— Իսկ... Ի՞նչ բան է այդ,— քարացած հարցրեց Սերգեյը, զգալով հոր չար դիտավորությունը։

— Այժմ ես կարող եմ ոտքս դոփել դեմնին և ասել՝ «Ա՛յ քեզ հիմար»,— հանդիսաբացատրեց Դավիդ Իվանովիչը։— Հենց դու հիմա այդպես դոռացիր քրոջդ վրա։ Նա չգիտի Զինաստանը, իսկ դու՝ ուղղանկյունային եռանկյունիները։ Չէ՞ որ դու մեծ ես, քեզանից շատ ավելին են հարցնում։

Սերգեյը բութ տեսք ստացավ։

— Սակայն ես չեմ հայհոյում քեզ,— ավելացրեց հայրը,— որովհետև դու դեռևս փոքր ես։ Ինքդ էլ զգույշ եղիր, երբ որ խոսում ես քրոջդ հետ։

Այդ օրից Սերյոժան այլևս չէր ծաղրում Ժենյային»։

Պֆլաումերովի ընտանիքում երբեք տարաձայնություններ չեն եղել ծնողների միջև՝ «կարելի է» և «չի կարելի» հարցերի



շուրջը։ Ինչ որ ասում էր մեկը, ամբողջովին հաստատում էին մյուսները։ Պահանջի այս միասնությունը հանդիսանում է հաջորդ անհրաժեշտ այն պահանջը, որը մենք ներկայացնում ենք ընտանիքին։

Անհրաժեշտ է փոքր հասակից երեխաներին պատվաստել կոլեկտիվիզմի ոգի, ընկերական վերաբերմունք, հարգանք իր ընկերների նկատմամբ։ Յուրաքանչյուր սովետական ընտանիքում հարկավոր է երեխաներին այնպես դաստիարակել, որպեսզի նրանք իմանան, որ նրանց սենյակը փակված մի փոքր աշխարհ չէ, այլ մեր երկրի մի մասը։

Հազվադեպ չէ, երբ երեխաները ճիշտ չեն հասկանում կոլեկտիվի նշանակությունը։ Ընկերականության զգացումը նրանց մոտ հաճախ դառնում է փոխադարձ ապահովություն։

Ընկերական վերաբերմունքի բարձրագույն «սկզբունքը» հաճախ դպրոցում համարում են «ընկերոջ չդավաճանելու» կանոնը նույնիսկ այն ժամանակ, երբ նա անվայել վարմունք է հանդես բերել։

Ծնողները և ընտանիքի ավագ անդամները պարտավոր են պայքարել երեխաների այն փորձերի դեմ, որոնք նպատակ ունեն դըր-

պարտել ուրիշի, որպեսզի իրենց պաշտպանված լինեն: Միևնույն ժամանակ անհրաժեշտ է վճռական պայքար մղել փոխադարձ ապահովության դեմ:

Ծնողները պարտավոր են բոլոր միջոցներով համոզել իրենց երեխաներին, որ փոխադարձ ապահովությունը ոչ մի ընդհանուր բան չունի իսկական ընկերականության հետ:

Շքանշանակիր ռուս Լեբեդև Կումաչն իր աշխատություններից մեկի մեջ, որը նվիրված է բարեկամությանը և ընկերականությանը, գրում է.

«Բարեկամը և ընկերը— մեծ խոսքեր են,
Մենք սիրում ենք դրանք ու գնահատում:
Բարեկամին չենք հանձնում թշնամուն,
Եվ ընկերոջը մենք չենք դավաճանում:
Բայց... (մեծ և կարևոր «բայցը»)
Չի կարող մեզ սառեցնել հանգստության
մեջ,—
Ընկերականությունը այդ՝ ուրիշ բան է,
Իսկ ավարությունը՝ ուրիշ բան»:

Երեխաների մոտ զարգացնելով և ամրապնդելով ընկերականության և բարեկամության զգացմունքը, ծնողները պարտավոր են միաժամանակ հաստատուն կերպով ներշնչել երեխաներին, որ արժեքավոր է



միայն այն բարեկամությունը, որն օգտակար է հայրենիքին, հասարակությանը: Եվ եթե ընկերները վատ վարմունք են ցույց տալիս, նրանք չպետք է լռեն այդ մասին: Ծնողները և դպրոցը պետք է հանդես գան խիստ համաձայնեցված կերպով: Եվ որպեսզի ոչ մի թյուրիմացություն չառաջանա, անհրաժեշտ է ամենասերտ կապ ընտանիքի և դպրոցի միջև: Այդ կապը պետք է հաստատվի երեխան դպրոց մտնելու առաջին իսկ օրերից:

Միաժամանակ ծնողները պետք է իմանան, թե ինչ պահանջ է ներկայացնում դպրոցը՝ դպրոցականի տնային կյանքի նկատմամբ: Դպրոցը սովորաբար հրավիրում է ծնողական ժողովներ— ընդհանուր և դասարանային: Դպրոցականի հայրը կամ մայրը պարտավոր է ներկա լինել այդպիսի ժողովներում: Սակայն դպրոցի հետ եղած կապը չպետք է սահմանափակվի միայն ծնողական ժողովներ հաճախելով: Շատ կարևոր է, որպեսզի ծնողները հաճախակի լինեն դպրոցում, կրուցեն դասարանի ղեկավարների հետ և կատարեն դպրոցի բոլոր պահանջները:

Սովորաբար դպրոցը դիմում է ծնողներին, խնդրելով հետևել այն բանին, որպեսզի

երեխաներն իր ժամանակին ուղարկվեն դպրոց, որպեսզի երեխաները լինեն մաքուր, լավ հագնված, սանրված և կարգին, հետևել աշակերտների տնային առաջադրանքների կատարմանը, սահմանել որոշ ռեժիմ դպրոցականի համար, ստուգել աշակերտների օրագրերը:

Դպրոցի այս բոլոր պահանջների կատարումը ծնողների կողմից, ստեղծում է դաստիարակչական սիստեմի միասնություն:

Դաստիարակության մեջ շատ խոշոր դեր է խաղում կատարման ստուգումը: Սա չի նշանակում, որ երեխայի ամեն մի քայլին հարկավոր է բծախնդրորեն հետևել: Ո՛չ մի դեպքում: Իսկ եթե ծնողները տղային, կամ աղջկան հանձնարարում են որևէ բանի հետևել, ապա պարտավոր են հետաքրքրվել, թե նրանք կատարել են այդ բանը: Այսպիսի ստուգումը երեխայի հետագա ողջ կյանքում խոշոր դեր է խաղում, սովորեցնում է նրան կատարողականություն և ճշտապահություն:

Ծնողների կողմից հատուկ հսկողություն պետք է սահմանվի տնային առաջադրանքների կատարման որակի վրա, որը բացառիկ խոշոր դեր է խաղում հաստատուն գիտելիքների ամրապնդման գործում:



Մեր դպրոցներում քիչ թվով դպրոցականներ չկան, որոնք «միջակ» են սովորում:

Եթե աշակերտների վատ թվանշանը հուզում է ծնողներին, ապա միջակ թվանշանը արդեն նրանց անհանգստացնում է:

«Միայն թե վատ չլինի»—ասում են նույնպես աշակերտներից վոմանք, իսկ մի քանի ծնողներ մասների արանքով են նայում:

Մեծ մասամբ միջակ գնահատականը հետևանք է աշակերտի անտոկունության, իր վրա համառ աշխատելու բացակայության հետևանք: Մեր երեխաներին հարկավոր է պատվաստել չարունակ դեպի առաջ գնալու ղգացումը, հարկավոր է մեր դպրոցականներին վարժեցնել այն բանին, որ նա համառ աշխատանքով կարողանա ձեռք բերել լավ և գերազանց ուսում:

Ոչ մի դեպքում չի կարելի դիմել թվանըշանների «գնման» սիստեմի, «պարգևատրմանը»՝ յուրաքանչյուր լավ կամ գերազանց թվանշանի համար: Այս բանը խոշոր վնաս է հասցնում երեխաներին, որովհետև նրանք դադարում են ուսման վրա նայել իբրև պարտականության, իբրև աշխատանքի, այլ կսովորեն հայրիկից և մայ-

ընկնից «պարգև» ստանալու, սիրալիր երեվալու համար:

Մյուս կողմից չի կարելի երեխային շարունակ «ներել» մինչև ուսման համար և ամեն քայլափոխում ընդգծել նրա թերությունները: Այդ բանը նրա մեջ չարություն զգացում է առաջացնում: Հարկավոր է շատ զգույշ լինել, աշխատել երեխայի մեջ հետաքրքրություն առաջացնել դեպի ուսումը, խրախուսել նրան, հավատ ներշնչել, որ ցանկություն ունենալու դեպքում նա կարող է լավ սովորել, հիշեցնել նրա պարտավորությունը երկրի առաջ, որը հող է տալիս նրան, կոլեկտիվի առաջ— սովորել, աշխատել միայն լավ և գերազանց:

Այս բոլոր պահանջների հետ միասին, որը ծնողները պարտավոր են ներկայացնել երեխաներին, պահանջվում է նաև շատ մեծ ուշադրություն երեխայի կարիքների նկատմամբ:

Մոսկվայի մարզի Տալդոմսկու ռայոնի կոլխոզնիկ Բրուսնիցինայի ընտանիքում մեծացել է Ռայան: Նա արդեն 9-րդ դասարանումն է: Ռայան ծնողների և դպրոցի պարծանքն է: Ռայայի գերազանց սովորելուն նպաստում է այն, որ ծնողներն ստեղծել են համապատասխան պայմաններ՝



տնային առաջադրանքները կատարելու համար: Ռայան ունի հատուկ անկյուն՝ պարապմունքի համար, որտեղ դրված է սեղանը՝ լույսի մոտ: Հենց այդտեղ էլ դրվում են նրա գրքերը և տետրակները: Անկյունում՝ պատին կախ է արված դասացուցակը և օրվա ռեժիմը: Ամբողջ անկյունը մաքուր է և տիրում է կարգ ու կանոն:

Ռայայի մայրը— Աննա Իվանովնա Բրուսնիցինան աշխատում է որ դասեր պատրաստելու ժամանակ տանը լռություն տիրի: Ոչ ոք Ռայային չի կտրում պարապմունքից, նա հնարավորություն ունի կենտրոնանալու: Նա տեսնում է, որ իր աշխատանքը գնահատում են ընտանիքում և ինքը ներշնչվում է հարգանքով՝ դեպի իր աշխատանքը:

Կոլխոզնիկուհի Մուրավյովան, որի երեխաները սովորում են Ցարոսլավսկու ռայոնի Սերենկովսկու դպրոցում, հնարավորություն չունի տնային առաջադրանքները կատարելու համար հատուկ անկյուն հատկացնելու: Նա պարապմունքի ժամերին երեխաներին սեղան է տրամադրում, չի կտրում նրանց պարապմունքներից, իսկ ինքն աշխատում է այդ ժամանակ կատարել այն-

պխի աշխատանք, որ չխանգարի երեխաներին պարապելու:

Դասեր պատրաստելու ժամանակ ոչ ոք չպետք է խանգարի դպրոցականին բարձր խոսակցություններով, աղմուկով, բացականչություններով: Եթե բնակարանում ռադիո կա, հարկավոր է այդ ժամանակ անջատել: Ոչ մի դեպքում չի կարելի աշակերտին խանգարել առանձին հանձնարարություններով («բա՛ց արա դուռը», «դանակը տուր», «հացի գնա») և անտեղի խոսակցություններով զբաղեցնել: Միայն այս պայմանների պահպանման դեպքում դպրոցականը հնարավորություն կունենա կենտրոնացած կերպով պարապել:

Ահա համառոտ կերպով այն տարրական պահանջները, որը ներկայացնում է դպրոցն ընտանիքին: Դժվար է, անգամ անհընար, թվել դաստիարակչական աշխատանքի բոլոր մոմենտները և նախորոք առաջացած բոլոր հարցերին պատասխան տալ:

Սակայն հարկավոր է հիշել միմիայն մի բան—դպրոցն ու ընտանիքը միևնույն նպատակն են հետապնդում: Իսկ քանի որ մի նպատակ ունեն, ապա նրանք պարտավոր են ձեռք-ձեռքի տված առաջ ընթանալ:

Այն ձևերը, որոնց մեջ ընտանիքի և դըպրոցի



կապը կարող է գտնել իր կոնկրետ արտահայտությունները, չափազանց բազմազան են: Այդ կարող են լինել. ծնողների մասնակցությունը պիոներական ֆորպոստի աշխատանքներում, որոնք կազմակերպվում են տներում, բանվորական ավաններում և այլն, մասնակցություն՝ ծնողական կոմիտեների աշխատանքում, ծնողների ակտիվի ստեղծումը՝ երեխաների ազատ ժամանակը կազմակերպելու գործում, դըպրոցական տոների անցկացումը, դպրոցականների տնտեսա-կուլտուրական սպասարկման կազմակերպումը, օգնություն՝ դպրոցական բժշկին՝ սանիտարա-առողջապահական ձեռնարկումների կիրառման ասպարիզում և այլն: Այդ ձևը կարող է լինել, վերջապես, մասնակցությունը երեխաների արտադպրոցական աշխատանքների կազմակերպման գործում (տարրկայական խմբակներ, դեղարվեստական ինքնագործունեության, սպորտային խմբակներ և այլն):

1938 թվի դեկտեմբերին ՍՍՌՄ Գերագույն Սովետի մի խումբ դեպուտատներ մի կոչով դիմեցին սովետական ինտելիգենցիային՝ իրենց վրա վերցնելու աշակերտական խմբակների ղեկավարությունը, դասախոսություններ կարդալ նրանց համար, ծա-

նոթացնել կուլտուրայի գանձերին։ Այս դի-
մումը կենդանի արձագանք գտավ և բազ-
մաթիվ բժիշկներ, ինժեներներ, գրողներ,
ճարտարապետներ, արտիստներ, ստախա-
նովականներ ծավալեցին հետաքրքիր և հը-
րապուրիչ արտադասարանային և արտա-
դպրոցական աշխատանք՝ երեխաների հետ։
Ծնողների շրջանում, որի թվում և գյուղա-
կանը, դպրոցը կգտնի ոչ սակավ մարդիկ,
որոնք կարող են իրենց գիտությունը և
փորձը տալ երիտասարդությանը։

Մեր սովետական դպրոցը մեծ ուշադրու-
թյամբ է օգտվում հասարակայնության
կողմից։

Նոր ուսումնական տարին պետք է դառ-
նա աճող սերնդի դաստիարակության նը-
կատմամբ սովետական ժողովրդի հոգատա-
րության մի ցույց։ Դեռևս երբեք դպրոցին
օգնելու ժողովրդական շարժումն այնքան
լայն չի ծավալվել, ինչպես այժմ։

Դպրոցի շեֆարկյալ ձեռնարկությունները
պետք է ուժեղացնեն իրենց հոգատարու-
թյունը դպրոցի նկատմամբ, պրակտիկ և
ամենօրյա օգնություն ցույց տան դպրո-
ցին։

Պարտիական կազմակերպությունները
պարտավոր են սիստեմատիկորեն զբաղվել



դպրոցի աշխատանքով և հատկապես հետա-
քրքրվել, թե կոմունիստներն ինչպես են
դաստիարակում իրենց երեխաներին, օգնել
պատանի պիոներական ջոկատների աշխա-
տանքին։

Շատ աշխատանքներ ունեն կատարելու
կոմերիտական կազմակերպությունները, ո-
րոնք դեռևս ամեն բան չեն արել Համ.
ԼԿԵՄ Կենտկոմի 10-րդ պլենումի որոշում-
ները կենսագործելու գծով։

***

Քիչ հաջողություններ ձեռք չի բերել սո-
վետական դպրոցը և սովետական ընտանիքը
աճող սերնդի դաստիարակման գործում։

Սակայն մեր սովետական հասարակայնու-
թյանը շատ խորը հուզում են այնպիսի ե-
րևույթներ, ինչպես անկարգապահությու-
նը, կոպտությունը, խուլիգանությունը,
կռվարարությունը։ Մեր դպրոցներից դեռ-
ևս չի վերացվել երկտարեցիությունը։

1940—41 ուսումնական տարին պետք է
լինի վճռական բեկման տարի դպրոցի և
ընտանիքի կողմից այդ թերությունները
վերացնելու համար մղվող պայքարում։

Մենք ուզում ենք, որ մեր երեխաները
լավ սովորեն, տիրապետեն գիտությանը։

Մենք ուզում ենք, որպեսզի մեր երեխաները չունենան ավելի բարձր և ազնիվ նպատակ, քան սոցիալիստական հայրենիքին ծառայելը:

Մենք ուզում ենք մանկությունից մեր երեխաների մեջ դաստիարակել բոլշևիկի արժեքավոր հատկությունները, մի մարդու, որի համար չկա ավելի բարձր բան, քան իր հայրենիքի, իր ժողովրդի շահերը:

---



# ՀԱՆՈՒՆ ԿՈԼԽՈԶԱՅԻՆ ԳՅՈՒՂԻ ԿՈՒԼՏՈՒՐԱԿԱՆ ԲԱՐԳԱՎԱՃՄԱՆ

Կոլխոզային կարգերի հաղթանակը մեր երկրում արմատապես վերափոխեց սովետական գյուղի դեմքը, նրա տնտեսական հիմքերը: Դժվար է այժմ որևէ համեմատություն անել նախառևոլյուցիոն գյուղի և սոցիալիզմի էպոխայի կոլխոզային գյուղի միջև:

Չկա այլևս անցյալի մռայլ, «խորթ մայր» գյուղը, որը չէր կերակրում իր հողի մշակին, աշխատավոր գյուղացուն, որը գյուղացուն իր հետ կապում էր ոչ այնքան որպես ապրուստի աղբյուր, որքան որպես հայրենի օջախ, պապական տուն: Ում հայտնի չէ, թե ինչպես հազարավոր և միլիոնավոր ընչազուրկ գյուղացիներ տարվա մեծ մասը պանդխտության մեջ էին անցկացնում մի կտոր հաց հայթայթելու համար, թե ինչպես կարիքն

ու գործազրկությունը նրանց մի քաղաքից մյուսը, մի երկրամասից մյուսն էր շպրտում: Կալվածատերն ու կուլակը, տերտերն ու քյոխվան, ցարական չինովնիկն ու վաշխառուն տզրուկի պես քամում էին աշխատավոր գյուղացու արյունը: Հետամնաց գյուղի բարբարոսական եղանակներով մշակվող հողի բերքը հազիվ էր բավականացնում մի խումբ գյուղատերերի ղեղխ ու շվայտ կյանքի պահանջները: Գյուղի գրեթե ամբողջ արտադրանքը կուտակվում էր մի խումբ շահագործողների ձեռքում, իսկ միլիոնավոր չարքաշ գյուղացիներ, գիշեր-ցերեկ քրտինք թափելով, հազիվ էին քարշ տալիս իրենց կիսաքաղց, կիսամերկ գոյությունը:

Այդ տխուր անցյալը՝ Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ Ռեվոլյուցիայի շնորհիվ, վաղուց արդեն պատմության գիրկն է անցել: Լենին-Ստալինի փառապանծ պարտիայի ղեկավարությամբ արմատապես վերափոխվեց հին գյուղը: Ստալինյան կոլխոզային կարգերը սովետական գյուղին բերեցին առատություն և տնտեսական բարգավաճում: Սոցիալիստական



գյուղը վեր է ածվել առատության աղբյուրի: Հարյուր հազարավոր կոլխոզներ պատվով կատարեցին մեր մեծ առաջնորդ ընկեր Ստալինի պատմական ցուցումը՝ «Կոլխոզները դարձնել բոլշևիկյան, իսկ կոլխոզնիկներին՝ ունևոր»...

Կոլխոզշինարարության հաղթանակները հիմք ստեղծեցին գյուղում իսկական կուլտուրական ռեվոլյուցիայի համար, գյուղն իր բոլոր կողմերով դարձավ անճանաչելի, հնի տեղն առաջ գալով «նոր գյուղն իր հասարակական-տնտեսական շենքերով, իր ակումբներով, ռադիոներով, կինոներով, դպրոցներով, գրադարաններով և մսուրներով, իր տրակտորներով, կոմբայններով, կալսիչներով, ավտոմոբիլներով» (Ստալին):

Մեծ են կոլխոզային շինարարության նվաճումները նաև մեզ մոտ, Հայկական ՍՍՌ-ում: Հարյուրավոր կոլխոզներ դարձել են հարուստ ու ամրակուռ սոցիալիստական տնտեսություններ: Ներկայումս Հայկական ՍՍՌ-ում միայն միլիոնատեր կոլխոզների թիվը հասնում է 53-ի: Այս տարվա առատ բերքը միլիոնատեր կոլխոզների թիվը կավելացնի նոր տասնյակներ-

րով: Այդ առաջավոր կոլխոզներից յուրաքանչյուրի եկամուտն անցնում է 2—3 միլիոն ռուբլուց: Կոլխոզների զարգացմանը և բարգավաճմանը զուգընթաց աճում է կոլխոզնիկների ունևորությունը, նրանց տնտեսական, նյութական ապահովությունը: Հազարավոր կոլխոզնիկներ տարեկան 10 հազար ռուբլուց ավելի եկամուտ են ստանում:

Ղամարլուի, Վաղարշապատի, Հոկտեմբերյանի, Աշտարակի, Կոտայքի և այլ շրջանների բազմաթիվ կոլխոզնիկների տարեկան եկամուտը հասնում է 20 հազար և ավելի ռուբլու: Գյուղի տնտեսական զարգացման և ամրապնդման հիման վրա, լայն ծավալ է ստացել կոլխոզային կուլտուր-կենցաղային նոր շինարարությունը: Մեր ռեսպուբլիկայում վերջին 3 տարվա ընթացքում կոլխոզնիկները կառուցել են 20 հազարից ավելի նոր, կուլտուրական, լուսավոր բնակարաններ: Բավական է ասել, որ միայն Ղամարլուի շրջանում կոլխոզնիկները կառուցել են մոտ 3500 նոր բնակարան: Կոլխոզները կառուցել են 20-ից ավելի ակումբ, 4 կոլխոզային ծննդատուն, 100 մանկամսուր և մանկահրապա-



րակ: Շրջանն ունի 36 դպրոց, 13 գյուղում անց է կացված էլեկտրական լուսավորություն: Անցյալ տարի ավարտվեց մեծ ջրմուղի կառուցումը, որը շրջանի ավելի քան 30 գյուղեր ապահովեց աղբյուրի սառնորակ ջրով: Այս տարի ավարտվելու է շրջանային թատրոնի գեղեցիկ շենքի կառուցումը: Կոլխոզների միջոցներով կառուցվում են մի շարք նոր դպրոցական շենքեր և այլն: Կուլտուրական շինարարության բնագավառում զգալի նվաճումներ են ձեռք բերել նաև մեր ռեսպուբլիկայի մյուս շրջանները: Բայց չնայած այդ նվաճումներին, պետք է ուղղակի նշել, որ մեր կոլխոզների, մեր գյուղերի սանիտարական, կուլտուրական վիճակը, մեր կոլխոզնիկների կենցաղային, կուլտուրական մակարդակը դեռ որոշակի կերպով հետ է մնում նրանց տնտեսական զարգացման և նյութական ապահովության աստիճանից: Վերցնենք նույն Ղամարլուի շրջկենտրոնը. այստեղ բացառությամբ շրջխնայդրամարկղի շենքի, մյուս հիմնարկների սանիտարական դրությունը շատ հեռու է բավարար լինելուց, ընդվորում բացառություն չեն կազմում անգամ ռայսովետի շենքը, շրջա-

նային հիվանդանոցը, սանիտարական կայանը, ծառայողների բնակելի շենքը և այլն: Չի գործում բաղնիքը, սիստեմատիկաբար չեն մաքրվում փողոցները և շենքերի բակերը, չեն կանոնավորված ջրի ծորակները և այլն :

Կամ վերցնենք մեր կոլխոզնիկների կուլտուրական-կենցաղային մակարդակը: Ուղղակի պետք է ասել, որ նրանք դեռ վատ են կազմակերպում իրենց կուլտուրական կենցաղը, չնայած դրա համար կան նյութական բոլոր պայմաններն ու հնարավորությունները: Այլ կերպ ինչո՞վ բացատրել, երբ ունևոր կոլխոզնիկների մեծ մասի տները, որոնք լի են ամեն բարիքներով, ապահովված են կահկարասիներով, մաքուր չեն պահվում, չեն սպիտակեցվում ոչ դրսից, ոչ ներսից և հատակը մեծ մասամբ հողից է:

Հարց է առաջ գալիս— որն է այս բոլորի պատճառը, ինչո՞ւ կոլխոզների և կոլխոզնիկների նյութական բարգավաճումը զուգընթաց առաջ չի գնում գյուղի կուլտուր-սանիտարական վիճակի վերելքը: Այդ օրինական հարցին պետք է տալ ուղղակի պատասխան. աշխատանքի այս կա-



րևորագույն բնագավառը գյուղում դեռ ինչպես հարկն է չեն ղեկավարում ու չեն ղեկավարում մեր գյուղական սովետները, կոլխոզների վարչությունները, սկզբնական պարտիական և կոմերիտական կազմակերպությունները, այլ կերպ ասած մեր գյուղի և կոլխոզների անմիջական ղեկավարները:

Ավելին. գյուղի աշխատանքի այս առաջնակարգ բնագավառը այդ կազմակերպությունների կողմից ուղղակի ինքնահոսի է մատնվել: Միանգամայն թույլ է եղել այդ ուղղությամբ ռայոնական պարտկազմակերպությունների, ռեսպուբլիկայի մի շարք ժողովրդական կոմիսարիատների և կենտրոնական հիմնարկների, առաջին հերթին Առժողկոմատի, Լուսժողկոմատի, Ժողկոմսովետին կից Արվեստի վարչության, Կինոֆիկացիայի վարչության, Կոմունալ տնտեսության ժողկոմատի, Հողժողկոմատի և Կապի ժողկոմատի ղեկավարության աշխատանքը:

ՀԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեն վերջերս քննության առավ գյուղի սանիտարական և կուլտուրական դրության արմատական բարելավման խնդիրները և նշեց մի շարք

կոնկրետ միջոցառումներ, հատկապես Ղամարլուի շրջանի նկատմամբ:

Կենտրոնական Կոմիտեն պահանջեց Ղամարլուի շրջանային կազմակերպություններից մինչև այս տարվա վերջը մի շարք գյուղերում կառուցել բաղնիքներ, կղմինդրի գործարաններ, ավարտել շրջանային հիվանդանոցի, սանիտարական կայանի, ծննդատների, մանկամսուրների վերանորոգումը և կահավորումը: Մինչև 1941 թ. գարունը կոլխոզների ուժերով մաքրել գյուղերը հին փլատակների մնացորդներից, կարգավորել փողոցները և գյուղամիջյան ճանապարհները, կազմակերպել բոլոր բնակարանների և այլ շենքերի սպիտակեցումը: Կազմակերպել ակումբների, գրադարան-ընթերցարանների պլանային աշխատանքը: Այդ հիմնարկներն ապահովել անհրաժեշտ գրականությամբ, կահույքով, գործիքներով և որակյալ կադրերով:

Անհրաժեշտ է բոլոր գյուղերում կազմակերպել օրինակելի վարսավիրանոցներ, պատրաստել աղբահորեր, աղբարկղներ, անասնագերեզմանոցներ և զուգարաններ:

Շրջանային, տեղական պարտիական և սովետական կազմակերպությունները գործ-



նական աշխատանքով, առաջիկա 2—3 ամսվա ընթացքում, պետք է ապահովեն ՀԿ(բ)Պ Կենտկոմի միջոցառումների կենսագործումը և վճռականորեն բարելավեն գյուղի կուլտուրական սանիտարական վիճակը: Այս ոչ հեշտ, բայց պատվավոր գործում պետք է առաջավորի դեր խաղան և անձնական օրինակ ցույց տան գյուղում աշխատող կոմունիստներն ու կոմերիտականները: Մեր կոլխոզային ակտիվը ինչպես գյուղատնտեսական աշխատանքի բնագավառում, այնպես էլ այս կարևորագույն աշխատանքի ասպարեզում պետք է ցուցաբերի բարձր կազմակերպվածություն, համառ և հետևողական պայքար մղի գործը մինչև վերջը հասցնելու համար: Մեր ռեսպուբլիկայի մի շարք կենտրոնական հիմնարկներն ու ժողկոմատները և նրանց ղեկավարները անձամբ պետք է օգնեն շրջանային կազմակերպություններին— գյուղի սանիտարական կուլտուրական վիճակը բարելավելու գործում:

Այստեղ տեղն է ասել, որ վնասակար ու սխալ է այն տեսակետը, թե գյուղի կուլտուրական սանիտարական վիճակի բարելավման գործը, կոլխոզնիկների կենցաղի

վերակառուցման գործը— դա ինչ-որ մասնավոր գործ է և վերաբերվում է միայն իրեն՝ գյուղացուն, կոլխոզնիկին։ Հենց դա է պատճառը, որ մեր տեղական պարտիական, սովետական կազմակերպությունները, կենտրոնական հիմնարկներն ու ժողկոմատները այդ կարևոր բնագավառը իրենց սեփական աշխատանքը չեն համարել և ըստ էության ինքնահոսի են թողել։ Դա սխալ է և այն էլ լուրջ սխալ, պետք է ամենօրյա, համառ ու հետևողական աշխատանքով, ամենօրյա կոնկրետ ղեկավարությամբ գլխավորել գյուղի կուլտուրական սանիտարական վիճակի արմատական բարելավման աշխատանքները։ Չպետք է մոռանալ, որ դա պայքար է հանուն գյուղի և քաղաքի միջև եղած տարբերության վերջնական վերացման։ Այդ պայքարում մեծ ու պատվավոր դեր ունի կատարելու մեր գյուղի բազմամարդ ինտելիգենցիան—ուսուցիչը, բժիշկը, գյուղատնտեսը, զոոտեխնիկը, անասնաբույժը, քաղլուս աշխատողները, որոնք պետք է ամրանան գյուղում երկարատև ժամանակով։

ՀԿ(բ)Պ Կենտկոմի՝ Ղամարլուի մասին



կայացրած որոշման մեջ նշված թերությունները և դրանք վերացնելու միջոցառումները ամբողջությամբ վերաբերվում են մեր ռեսպուբլիկայի բոլոր շրջաններին։ Գյուղական և շրջանային պարտիական, սովետական և կոմերիտական կազմակերպությունները պետք է գործնական աշխատանք սկսեն կարճ ժամանակամիջոցում գյուղի կուլտուր-սանիտարական վիճակը բարելավելու համար։

Մի քանի շրջաններ արդեն ձեռնամուխ են եղել այդ աշխատանքներին։ Ղամարլուի և Կոտայքի շրջաններում այդ հարցը դարձավ ռայոնական պարտիական կոմիտեների պլենումների հատուկ քննության առարկա և ձեռնարկվեցին գործնական միջոցառումներ։ Գործնական քայլեր է սկսել նաև Առժողկոմատը։ Մյուս ռայոնները և ժողկոմատները դեռ գործի չեն անցել, իսկ ուշանալ կնշանակի ժամանակ կորցնել և հետ մնալ։

Հայաստանի կոլխոզնիկները, պարտիական կազմակերպությունների ղեկավարությամբ վերջին երեք տարիների ընթացքում, հատկապես 1940 թվին ազնիվ աշխատանքի հիանալի օրինակներ ցույց տվին

*տնտեսական շինարարության բնագավառում: Այդ հաջողությունները նշվեց Համ. Կ(բ)Պ Կենտկոմի և ՍՍՌՄ Ժողկոմսովետի 1940 թ. սեպտեմբերի 6-ի—«Հայկական ՍՍՌ-ում պտղաբուծությունը, խաղողագործությունը և տեխնիկական կուլտուրաները զարգացնելու ձեռնարկումների մասին» պատմական որոշման մեջ:*

*Ոչ մի տարակույս չի կարող լինել, որ պարտիայի առաջադրանքը՝ կոլխոզային գյուղը դարձնել կուլտուրապես առաջավոր, բարգավաճ գյուղ,—Հայաստանի կոլխոզնիկները, մեր գյուղի կուլտուրական կադրերը, գյուղական պարտիական, սովետական և կոմերիտական կազմակերպությունները նույնպես կկատարեն պատվով և ժամանակին:*

---

Պատասխանատու խմբագիր՝
Դ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Սրբագրիչ՝ Հ. ՋՐԱՂԱՑՊԱՆՅԱՆ

ՎՖ 2407
*Պատվեր՝* 943, *տիրաժ* 7607
*Հանձնված է արտադրության* 10/X 1940 *թ.*
*Ստորագրված է տպագրության* 16/X 1940 *թ.*

---

*Հայկական ՍՍՌ Ժողկոմսովետին կից Թերթերի և ամսագրերի տպարան, Երևան*

ԴԻՏՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՀԱՄԱՐ

ՄԵՐ ԲՈԼՈՐ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻՆ ԵՎ «ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ»-Ի ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԻՆ

ՇԱՐՈՒՆԱԿՎՈՒՄ Է

# «ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ»-Ի

1940 թվի

## ՆՈՅԵՄԲԵՐ—ԴԵԿՏԵՄԲԵՐ

ԱՄԻՍՆԵՐԻ ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ

Բաժնեգինն է ամսական 50 կոպ.:

Լույս է տեսնում ամիսը 2 անգամ:

ՅՈՒՐԱՔԱՆՉՅՈՒՐ ԱԳԻՏԱՏՈՐ ՊԵՏՔ Է ԼԻՆԻ «ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ»-Ի ԲԱԺԱՆՈՐԴԸ

ՇՏԱՊԵԼ ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՎԵԼՈՒ